# ՀԱՎԵՐԺԱԿԱՆ ԿՐԱԿԸ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Կանաչազարդ պուրակում մեր
Կա գեղեցիկ մի հուշարձան,
Ուր շողում է ամառ-ձմեռ
Անշեջ հուրը ալեծածան։

Շուրջը անմահ հուշարձանի,
Առավոտից մինչ ուշ գիշեր,
Առած գույներ ծիածանի,
Ցայտում են շող-շատրվաններ։

Ու նայելիս թվում է ինձ,
Որ կրակն այդ հավերժական
Ցայտում է հենց նրանց սրտից,
Որ մեզ համար մարտում ընկան։

Ալ արյունն է վառվում այնտեղ
Հերոսների Նոյեմբերյան,
Ալ արյունը՝ դարձած կանթեղ,
Դարձած փարոս մի հուրհրան։

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

# ԿԱՊԱՎՈՐԸ

ՀԱԿՈԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ

Անտանելի շոգ էր: Տաք օդը խտտում էր մարդու աչքը և ստիպում կկոցել:

Հաստատ իմանալով, որ փողոցում կասկածելի ո-

— Դուք գիտե՞ք, պարոնայք, թե ինչքան է գնահատված այդ բոլշևիկը: Չգիտե՞ք: Համեցեք, 200 հազար ռուբլի, ոսկով...— Բեղերը վեր ցցած միջին տարիքի մարդը նայեց հովեկներին, թե ինչ տպավորություն թողեց նրանց վրա իր խոսքը և թաշկինակով ըս-



չինչ չկա, կապավորը, այնուամենայնիվ, իբր անտարբեր, մեկ էլ նայեց իր շուրջը և սովորական քայլերով շարժվեց դեպի կայարան: Ինչքան էլ նա հոգնած էր,— հե՞շտ էր գործարանում ամբողջ օրն աշխատելը,— բայց առույգ երիտասարդի նման էր շարժվում. պատասխանատու հանձնարարությունը մոռացնել էր տվել նրան ամեն մի հոգնություն:

Ահա և գնացքը: Բարձրացավ առաջին պատահած վագոնը և մի դատարկ տեղ գտնելով, նստեց:

Երբ զննեց իր շուրջը, կապավորի խիտ հոնքերը բարձրացան. «Բուրժուական կուպե ընկա»:

Լսվեց թույլ սուլոց. գնացքը դանդաղորեն շարժվեց:

— Դու ճիշտ ես ասում, Մատվեյ Իվանովիչ, այդպես էլ կլինի. Լենինը գերմանական լրտես է,— ասաց մաքուր հագնված մի հովեկ:

— Բա ի՞նչ. էլ ինչո՞ւ է հայրենիքը ծախում: Կատարյալ լրտես է, այո՛, այո՛,— իր միտքը կրկին անգամ հաստատել ջանաց կարճ մորուքով մարդը:

Նկ. Վ. ԱՋԻ ԹՈՒՄԱՆՅԱՆԻ



կրսեց սրբել իր դեմքը:

— Նո՛ւ, չաղ պատառ է:

— 200 հազար...

— Է՛խ... Ա՛յ թե գտնես:

Տաք-տաք խոսում էին հովեկները:

Կապավորը մի անհանգիստ շարժում արեց, բայց և լուռ մնաց: Նրա քրտինքը քունքերից հոսում էր դեպի այրվող այտերն ու կաթում ցած:

Բուրժուական ժամանակավոր կառավարությունը գործը հասցրել էր այնտեղ, որ նույնիսկ յունկերները Լենինին գտնելու համար օգտագործում էին շատ աչքի ընկած, հոտառու Տռեֆ շանը:

— Է՛, ախպերացու, էդ խմորը դեռ շատ ջուր կըվերցնի,— ասաց նիհար դեմքով մի ծերունի:

Հովեկներից մի քանիսը թթու հայացք գցեցին նրա վրա:

— Ինչ ուզում է վերցնի... Պետք է հասկանալ՝ այդ է ճամփան: Հարկավոր է հայրենիքը մաքրել դավաճաններից:

Ծերունին հառաչեց և շուռ եկավ դեպի պատուհանը:

Կապավորը զայրացած ոտքի ելավ և էլի նստեց; Ատամները կրճտացնելով նայում էր բեղերը վեր ցցած հովեկին. «Քեզ պետք է շանսատակ անել, խոզի մռութ»:

Կապավորի դիմացը բազմած մի սևավեղար կրոնավոր, որ սարկավագի տպավորություն էր թողնում, փափուկ ձեռքերում բռնած ինչ-որ մի թերթ, հերյուրանքներ էր կարդում Լենինի մասին և թևավոր ստերով ճոխացնում:

Հովեկներն ասես անմիջապես կուլ էին տալիս նրա ասածները և էլի լարված սպասում:

Սարկավագը ձայնին խորհրդավոր երանգ տալով, ասաց.

— Պարոնա՛յք, ուղղափա՛ռ հոտ մեր, Լենինը ծընվեց՝ անաստված հակաքրիստոնյան, որ ռուսական հավատը մեր կործանի, կյանքը մեր խորտակի:

Կապավորն էլ չկարողացավ համբերել. վճռականորեն ոտքի ելավ և, հայացքը գամելով սարկավագի պըլշած աչքերին, ասաց.

— Դու ես մեր կյանքը մթագնողն ու խորտակողը, ծրիակեր գարշելի...

Չաղ սարկավագը փնչացնելով վեր թռավ.

— Ա՛խ, դու, Լենինի լրտես...— ու հարձակվեց կապավորի վրա, հովեկներն էլ նրա ետևից:

— Վարձկան սրիկա...

— Պոչ...

Կապավորն ուրիշ ելք չունենալով, ցատկեց հարևան կուպեն, նրանք էլ, մարդկանց հրմշտելով, վրա տվին:

Էլ տեղ չէր մնացել, որ կապավորը խույս տար նըրանցից: Ի՞նչ աներ... Այնքան էլ շատ էին: Հենց այդ ժամանակ գնացքը կանգ առավ Նովի գյուղում: Կապավորն իրեն դուրս գցեց վագոնից, գազազած սարկավագն ու հովեկները՝ նույնպես, և շրջապատեցին նրան: Կապավորին հաջողվեց ծլկել նրանց միջից՝ պատռված օձիքով: Եվ մեջքը դեմ տված պատին՝ կանգնեց, որ մոտեցողին հարվածի բռունցքներով:

Թերթավաճառ մի տղա, երբ տեսավ այս բոլորը, շեկ մազերը ճակատից հեռացնելով, վազեց գնացքի սպասող մի հսկա զինվորի մոտ և շնչակտուր ասաց.

— Քեռի՛... սալդա՛տ քեռի..

— Ի՞նչ կա:

— Էնտեղ... էնտեղ ծեծում են մեկին,— ու ցույց տվեց խռնված մարդկանց:

Զինվորը վազեց: Մի պահ կանգ առավ ամբոխի մոտ. ասես չափում էր նրանց և իր ուժերը:

— Ի՞նչ եք անում, յուղոտ պարոններ, հը՞...— իր ահռելի բռունցքներն առաջ պարզեց:

Հովեկները զարմացած նայեցին հաղթանդամ զինվորին:

— Ի՛նչ, մեջքներդ քոր է գալի՞ս, հա՞...— շունչը հավաքեց,— չքվեցե՛ք...— մի քանի քայլ առաջ գնաց:

Հովեկները ետ-ետ քաշվեցին: Տղան, զինվորի մոտ կանգնած, բռնազդորեն փոքրիկ բռունցքներն էր սեղմում և նրա նման գնում դեպի ամբոխը:

— Դեռ կանգնել ե՞ք,— զինվորը մի քայլ էլ առաջ գնաց:

Երբ հովեկները տեսան, որ աժդահայի աչքերը զայրույթից կայծեր են արձակում, սուսուփուս հեռացան:

Զինվորն ըմբշամարտիկի նման կանգնած դեռ նայում էր «յուղոտ պարոնների» ետևից, իսկ փոքրիկ տըղան թափ էր տալիս կապավորի շորերն ու ասում.

— Շատ էին անիծածները,— ասես արդարացնում էր կապավորին,— համա ո՛նց ծլկեցին,— ու ծիծաղեց:

Կապավորը չէր լսում տղային: Նրա հոգին ցնցված էր. քիչ էր մնում ամեն ինչ փչանար: Մեղավոր էր ըզգում իրեն, որ տաքարյունություն ցույց տվեց:

Շնորհակալություն հայտնեց զինվորին և արագ գընաց դեպի Պետրոգրադ: Եվ հանձնարարությունը կատարած, վերադարձավ Ռազլիվ:

Արդեն արևը մայր էր մտել. երեկոյան զովն էր իջել

հողին։ Շտապ ներս մտավ իրենց կանաչապատ բակը։ Նրա կինը՝ Նադեժդա Կոնդրատևնան, այլայլված ամուսնուն տեսնելով, ասաց.

— Մի՛ անհանգստանա, Նիկոլայ, ամեն ինչ լավ է... Ի՞նչ ես տխրել։ Ինչո՞ւ շորերդ պատառոտված են։

— Հետո, Նադե՛ժդա, հոգի՛ս, հետո կպատմեմ...— ու մտավ ցախատուն, գնաց դեպի ձեղնահարկի սանդուղքը, իսկ Վլադիմիր Իլյիչն արդեն դռան արանքից դիտում էր Նիկոլայ Ալեքսանդրովիչին ու անհանգստանում. նրան թվում էր, որ իր տանտիրոջ հետ ինչ-որ բացառիկ բան է պատահել։

Ահա և Լենինի անշուք կացարանը։ Փոքրիկ սեղանի վրա դարսված այդ օրվա բոլոր թերթերն ուսումնասիրելուց հետո, Լենինը զանազան գրքերից վաղուց արած քաղվածքներն էր կարդում և զանազան նշումներ անում այդ կապույտ կազմ ունեցող տետրի մեջ, բայց ոտնաձայն լսելով, շտապ ոտքի ելավ։

Նիկոլայ Ալեքսանդրովիչը զգուշորեն ներս մտավ և խսկույն զեկուցեց Իլյիչին. հաղորդեց հանձնարարության պատասխանը և մեղապարտի նման կանգնեց։

Լենինը նոր, հրատապ մի հանձնարարության մասին էր մտածում, բայց երբ շատ կարդալուց ասես մըշուշվող իր աչքերը դարձրեց տանտիրոջը, կրկին զգաց նրա անհանգստությունը.

— Ի՞նչ, վատ բա՞ն է պատահել, Նիկոլա՛յ Ալեքսանդրովիչ։

Լենինի խոսակցության մտերմական շեշտից՝ ավելի ազդված, կապավորը կարմրեց, բայց չէր կարելի իրողությունը թաքցնել երևույթների խորքը թափանցող այդ մարդուց։ Իհարկե, այդպիսի մտադրություն էլ չուներ, ուստի ամեն ինչ մանրամասնորեն պատմեց նրան։

Երբ վերջացրեց, Իլյիչը գլուխն օրորելով ասաց.

— Ա՛յ, ա՛յ, ա՛յ... Դու անզուսպ կապավոր ես, Նիկոլայ Ալեքսանդրովիչ, հիվանդագին տաքարյուն։— Մտածմունքի մեջ ընկավ։— Չէ՞ որ, սիրելիս, դու ուրիշ շատ անհետաձգելի գործեր ունես։

— Զգում եմ իմ սխալը, Վլադիմիր Իլյիչ։ Թշնամուն արթնացրի...

— Այո՛, այո՛։ Պետք է հնձատեղ գտնել, հրատապ հարց է լճի դիմացը տեղափոխվելը։

Կապավորը մտքերի մեջ ընկավ. հարկավոր էր ըշտապ հնձատեղ գտնել, այլապես սխալի արդյունքները շատ ողբալի կարող էին լինել։

Լենինը մոտ գնաց Նիկոլայ Ալեքսանդրովիչին, ձեռքը մտերմորեն դրեց նրա ուսին և աչքերը կկոցելով ասաց.

— Լավ է, քոթակվելուց ազատվել ես,— և զուսպ ծիծաղեց։

Շուտով Նիկոլայ Ալեքսանդրովիչը Լենինին թաքցըրեց Ռազլիվ լճի դիմացը՝ Սեստրորեցկիի անտառի գրկում, բայց միշտ էլ այն չարաբաստիկ դեպքը մըտքից դուրս չէր գալիս։






ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Նրանք եկան խմբագրություն՝ մաշված ոտնամաններով, խունացած պիոներական համազգեստով և մեջքներին ճամփորդական պայուսակ կրող այդ երկու տղան:

Ովքե՞ր եք դուք, հարցրինք մենք:

—Ես Արտակն եմ, ասաց նրանցից մեկը:

—Ես Զոհրակն եմ, ասաց մյուսը:

Ձեզ նայելով, կարելի է կարծել, որ դուք ճանապարհորդներ եք, ասացինք մենք:

Այո, և մենք քիչ չենք ճանապարհորդել, ասացին նրանք: — Բայց ի տարբերություն ուրիշների, մենք ճանապարհորդում ենք ոչ թե տարածության մեջ, այլ՝ ժամանակի: Մենք կարող ենք լինել պատմության ցանկացած ժամանակաշրջանում, ներկա լինել և մասնակցել պատմական ցանկացած իրադրությանը...

Հետաքրքիր է... ասացինք մենք, հապա պատմեք, թե որտեղ եք եղել վերջին ճանապարհորդության ընթացքում, ինչեր եք տեսել:

— Մենք հենց դրա համար էլ եկել ենք խմբագրություն, ասացին նրանք: Մենք հուսով ենք, որ «Պիոները» իր էջերում տեղ կտա մեզ և մենք ամեն



ճանապարհորդությունից հետո երեխաներին կպատմենք մեր տեսածի ու լսածի մասին:

—Անշուշտ,— ասացինք մենք և սիրով նրանց տեղ տվեցինք մեր հանդեսի էջերում: Եվ ահա, թե ինչ պատմեցին նրանք...

...Այս անգամ մենք եղանք սրանից մոտ քսանութ դար առաջ, այժմյան Վանա լճի շուրջը տարածված երկրում... Բայց նախքան այս երկրի մասին պատմելը, մենք ուզում ենք պատմել այդ նույն ժամանակներում տեղի ունեցած մի նշանակալից իրադրության մասին: Մեր թվարկությունից 763 տարի առաջ Ասորեստանյան հզոր պետության մայրաքաղաք Նինվեում արևը խավարեց: Սարսափահար ժողովուրդը լցվել էր հինավուրց քաղաքի փողոցներն ու հրապարակները, ամենուր լսվում էր մարդկանց վայնասուն, շների ոռնոց, աղմուկ: Աշուր աստծու խավարած տաճարում գլխավոր քրմապետը ու քրմերը աղոթում էին ամենազոր աստծուն... Ասուրդա թագավորը պատվիրակ ուղարկեց գլխավոր քրմապետի մոտ:

— Դու՛, քրմապե՛տ Նիրարի, քո քրմերով աղոթում ես Աշուրին ու Իշտարին, որպեսզի աստ-

վածներն ավելի ու ավելի մեծ չարիքներ թափեն Ասորեստանի գլխին, դու աստվածների զայրույթն ես գրգռում իմ դեմ: Բավակա՛ն է, Նիրարի, իմ երկիրը, որը մի ժամանակ ծաղկուն էր ու հզոր, քո անեծքների հետևանքով հասել է թշվառ վիճակի, իմ վասալները այլևս հաշվի չեն նստում ինձ հետ, իմ երկրում ամենուր տիրում է երկպառակություն ու անիշխանություն, վայրենի ուրարտների թագավորը՝ ամբարտավան Արգիշտին, ասպատակում է ինձ ենթակա երկրները և սպանում է Նինվեին...

Ո՞վ էր Արգիշտին և ինչու՞ էին նրանից այսպես սարսափում գոռոզ Ասորեստանի թագավորները:

Սրանից մոտ երկու հազար ութ հարյուր տարի առաջ, Վանա լճի շուրջը տարածված Բիայնա երկրի թագավոր Մենուան երկու որդի ունեցավ՝ Ունուշպուա և Արգիշտի: Ունուշպուան մարմ-



նով այնքան էլ զորեղ չէր, սակայն ուներ խորաթափանց միտք և կարողանում էր աստղերով գուշակել դեպքերի հետագա ընթացքը, կարդալ ամենազոր աստվածների խորհուրդը: Արգիշտին զորեղ էր մարմնով, հորից ժառանգել էր քաջություն և խորամանկություն: Հոր մահից հետո Արգիշտին դարձավ Բիայնայի թագավոր, իսկ Ունուշպուան՝ Բիայնա պետության գլխավոր քրմապետ: Եվ իրենց ամբողջ կյանքի ընթացքում երկու եղբայրները՝ Բիայնա երկրի հոգևոր և քաղաքական իշխանության ղեկավարները, եղան համերաշխ և միաբան: Եվ նրանց իշխանության ժամանակաշրջանում Բիայնան տարավ իր պատմության մեջ ամենախոշոր հաղթությունները:

Մենք մասնակցեցինք իրար հաջորդող տասնչորս տարիների ընթացքում Արգիշտիի բազմաթիվ արշավանքներին: Արգիշտիի հեծելազորի ու հետևակի հետ այդ տասնչորս տարիների ընթացքում մենք նվաճեցինք բազմաթիվ հարևան երկրներ ու ժողովուրդներ, և Բիայնայի սահմանները ընդարձակվեցին Ասորեստանից մինչև այժմյան Քուռ գետի ափերը, Միդիայից մինչև Եփրատի ափերը... Ամեն հաջող արշավանքից հետո մենք ավարով ու գերիների բազմությամբ վերադառնում էինք Վանա լճի ափերը, և Բիայնայի մայրաքաղաք Տուշպայի բնակչությունը մեզ դիմավորում էր ցնծությամբ... Այստեղ, իհարկե, հնարավոր չէ պատմել Արգիշտիի բոլոր արշավանքների, տարած բոլոր փառավոր հաղթանակների մասին, որոնց մասնակցեցինք մենք: Արգիշտիի այդ փառավոր գործերի մասին այսօր էլ կարելի է կարդալ Վան քաղաքից ոչ հեռու, Խորխոր կոչված



քարանձավների մոտ, բարձր ժայռին փորագրված սեպագիր արձանագրության 380 տողերում... Բայց Արգիշտիի մի արշավանքի մասին, որին մենք նույնպես մասնակցեցինք, հատկապես ուզում ենք պատմել:

Դա Արգիշտիի թագավորության 5-րդ տարում էր, մեր թվարկությունից 782 տարի առաջ: Գարունը գալու հետ մեկտեղ Արգիշտին նորից զորահավաք հայտարարեց: Ձնհալը դեռ չվերջացած, բրոնզե՛ վահաններով, երկար նիզակներով ու ծանր սրերով զինված նրա զորքը դուրս եկավ Տուշպայից և շարժվեց դեպի հյուսիս: Ճանապարհին ամրոց-քաղաքներում մեր զորքին միանում էին նորանոր զորախմբեր, և արդեն ապրիլ ամսին Արարատ լեռան ստորոտներին հասավ և Արաքսն անցավ մի հսկայական զորաբանակ: Շարժվեց մեր զորաբանակը հյուսիսային կողմ, դեպի Մանա երկիրը, որի թագավորն էր Ազան: Ճանապարհին հանդիպող ցեղախմբերին մենք հաղթում էինք փոքրիկ ճակատա-





մարտերում: Արագաշարժ ձիեր լծած մարտակառքերին, ծանր բրոնզե վահաններ կրող, երկար նիզակներով, սրերով ու նետաղեղներով զինված մեր զորքին ոչ ոք չէր կարող քիչ թե շատ դիմադրություն ցույց տալ: Եվ շարժվեց Արգիշտին ավելի հյուսիս, այստեղ մեծ հարթավայրի եզրին մենք տվեցինք մեր խոշոր ճակատամարտերից մեկը: Մարտակառքերի ճռինչը, ձիերի խրխինջը, մարտնչող զինվորների աղաղակները և զենքերի շառաչը այդ շոգ օրը խախտեցին այս ամայի հարթավայրի տարիներ տևած անդորրը: Մերձավոր Արևելքի շատ երկրներում մարտնչած մեր զորաբանակը այստեղ ևս հաղթություն տարավ:

Ճակատամարտից հետո Արգիշտին քրմերի ու զորավարների բազմությամբ ելավ մոտակա բլրի գագաթը, Շուրջը տափարակ հարթավայր էր, հողը արգավանդ էր, սակայն անմշակ, դաշտը այդտեղից երևում էր մինչև հեռավոր լեռների ստորոտները և շրջակա բոլոր բնակավայրերը այստեղից երևում էին ինչպես ափի մեջ: Կանգնեց Արգիշտի հզորազոր թագավորը բլրի վրա, հպարտ, և ասաց.

—Խալդ աստծո զորությամբ ես հաղթեցի Ազայի երկրի ժողովըրդին և ենթարկեցի ինձ: Եվ որպեսզի այդ ժողովուրդը միշտ հնազանդ ու ենթակա մնա իմ իշխանությանը, ես կկառուցեմ այստեղ ամրակուռ ամրոց և վեհափառ տաճար, և ամրոցում թող մնա ինձ հավատարիմ ու հաղթող զորքը, և տաճարում թող աղոթեն քրմերը, որպեսզի աստվածների բարեկամությունը միշտ հովանավոր լինի ինձ: Եվ թող կոչվի ամրոց-քաղաքը այս տեղի անունով...

Եվ հենց այստեղ՝ բլրի վրա, հրաշեկ մայրամուտում հանգչող Արարատի խաղաղավետ կատարների դիմաց Արգիշտին զարկեց իր վրանը, և Բիայնայի առնական մարտիկները հարթավայրում վառած բազմաթիվ խարույկների շուրջ խրախճանեցին մինչև լուսաբաց:

Հենց նույն գիշեր Արգիշտին ձիավոր սուրհանդակ ուղարկեց Բիայնա երկրի հոգևոր կենտրոն՝ Մուսասիր քաղաքը, և ձիավոր սուրհանդակը Խալդ աստծո գլխավոր տաճարի քրմապետին հասցրեց հետևյալ ուղերձը. «Իմ արյունակից եղբայր Ունուշպուա, Խալդ աստծո գլխավոր ծառա, Խալդ աստծո զորությամբ ես հաղթեցի Ազայի երկրի ժողովրդին և ենթարկեցի ինձ, ես Ազայի երկիրը միացրի իմ երկրին և գերեվարեցի նրա բովանդակ ժողովրդին: Ուստի երախտահատույց եղիր Խալդ աստծուն և մեր մյուս կարող աստվածներին և պատշաճ զոհեր մատուցիր, աղոթիր նրանց Բիայնայի հզորության համար...» Ապա Խալդյան գլխավոր տաճարում քրմերը Խալդ աստծուն զոհաբերեցին վեց ցուլ, տասնյոթ արջառ և երեսունչորս ոչխար, և դաժան Թեյշիբո աստծուն՝ վեց արջառ և տասներկու ոչխար, և Արգհնի աստծուն՝ չորս արջառ





## ԻՄ ԵՐԵՎԱՆԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Իմ Երևանի քարերը հին են,
Դարերը հին են իմ Երևանի,
Բայց երգում է նա արևի հիմնը
Շուրթերով զվարթ իր Հրազդանի:
Կան մեր պապերի ձեռքի հետքերը
Իմ Երևանի որմից ու պատից,
Կապված են նրան մեր կուռ ձեռքերը,
Ինչպես ճյուղերը՝ կաղնու արմատին:
Մամռած հիմքերին հուշեր կան մամռած,
Լույսեր կան նրա սյուներին վերձիգ,
Նա վեհացնում է անցյալով ներկան,
Նորով անցյալը դարձնում գեղեցիկ:
Ժպտում է նա իր քարերով ծաղկած
Եվ անրջում է աստղային եթեր
Որձաքարերով ադամանդացած.

ուր ոչխար. և մյուս աստվածներին նույնպես՝ համապատասխան զոհեր: Եվ եղավ այդ օրը Մուսասիրում մեծագույն խրախճան:

Այնուհետև. հիշյալ բլրի վրա Արգիշտիի հրամանով Միջագետքից բերված վեց հազար ստրուկներ կառուցեցին քարակուռ բերդամրոց. զորանոցներով. մառաններ, սյունասրահ բակով պալատ և տաճար: Իսկ իրենք. այնուհետև, բնակություն հաստատեցին բլրի ստորոտներում, բլրի շուրջը և սկսեցին մշակել հողը:

...— Իսկ հիմա. – ասացին Արտակն ու Զոհրակը.— մենք մտադիր ենք ուղղաթիռով բարձրանալ ու վերևից նայել այն վայրերին, ուր տեղի ունեցավ հիշյալ ճակատամարտը: Չէի՞ք ցանկանա դուք էլ միանալ մեզ:



—Ուրախությամբ.— ասացինք մենք:

Հինգ րոպե հետո ճեպընթաց ավտոբուսը մեզ տանում էր դեպի օդանավակայան. տասը րոպե հետո մենք տեղեր գրավեցինք ուղղաթիռի խցիկում և երկու րոպե հետո ճախրում էինք բա՜րձր, բա՜րձր: Ներքևում. մութի մեջ, հորիզոնից-հորիզոն ամբողջ հարթության վրա և հեռավոր բլրալանջերին ու սարահարթներին նույնպես փռված էին հսկայական քաղաքի բյուրավոր լույսերը:

Ավելի քան յոթ հարյուր հազար մարդ է ապրում այս քաղաքում,— ասաց Արտակը:

—Ոմանք կկարծեն. թե Երևանը այսպես մեծացել. տարածվել է այն հնագույն ժամանակներից սկսած,— ասաց Զոհրակը.— բայց ամենևին էլ այդպես չէ...

— Համբերիր,— նրան ընդհատեց Արտակը.— այդ մասին մենք կպատմենք մի ուրիշ անգամ: Դրա համար մեզ պետք է մի նոր ուղևորություն կատարել ժամանակի մեջ: Իսկ հիմա արի շնորհակալություն հայտնենք «Պիոների» ընթերցողներին ուշադրության համար և նրանց հաջողություններ մաղթենք:

Ուղղաթիռը գնում էր վայրէջքի. Ներքևում շողշողում էին հսկայական քաղաքի լույսերը: Այնտեղ. հեռու. հորիզոնում, լույսերի ծովում կորած, բարձրանում էր մի մութ. աննշան բլրակ. մեր թվարկությունից 782 տարի առաջ Բիայնա պետության ամենահզոր թագավոր Արգիշտին այդ բլրակի վրա հիմնադրեց Էրեբունի կամ Երևան ամրոց-քաղաքը:



*Տուֆաքարերով՝ կակաչի թերթեր...*
*Կանաչ լանջերի թիկնոցով կանաչ*
*Խլրտում է նա, խենթորեն պարում,*
*Եվ կարմիր քարը ծուլվում է նրան՝*
*Որպես դարերի խտացած արյուն:*
*Զայնում է հիմա կարոտի կանչով*
*Եվ փուրգուրում է շոյանքով իր հին,*
*Օտար ափերում հայրենի տենչով*
*Հայրենիք կանչող իր որդիներին:*
*Նոր Մասիսներ է կերտում նա մուրճով*
*Որ աշխարհներին հպարտ երևան,*
*Եվ բարձրանում է դարերի միջով*
*Հայրենի ոճով մի նոր Երևան:*





# ՄԵԿ ՎԵՑԵՐՈՐԴ ՇԱՐԻՆՋԸ

ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ցերեկները նա քաղցից կիսամեռ քարշ էր գալիս քաղաքով մեկ։ Նրա ագահ հայացքը միայն ուտելիք էր փնտրում։ Նա հիպնոսվածի նման երկար քայլում էր մի անցորդի հետևից, որի ձեռքին ուտելիք էր տեսած լինում կամ կանգ էր առնում ու մինչև ուշագնացության հասնելը նայում հացավաճառին։ Պատահական փշրանքները և ուտելիքի մնացորդները, որ մեկ-մեկ ընկնում էին ձեռքը, նա կուլ էր տալիս առանց փողոցի փոշիներն ու կեղտը մաքրելու, որովհետև ուտելիքից բացի ոչինչ չէր տեսնում։

Ուղեղում միտք չէր մնացել։ Ուտելու անդադար ցանկությունն անգամ նրա գլխում մի որոշակի մտքի ձև չուներ։ Նա ոչինչ չէր հիշում՝ ուժ չուներ դրա համար. ոչինչ չէր ուզում, միայն սոված գազանի նման փնտրում էր։

Նա ձեռք մեկնեց մուրալու՝ առանց հասկանալու, թե ինչ է անում։ Նրան համարյա ոչինչ չէին տալիս։ Երբեմն մի պատառ հաց, իսկ հաճախ ամբողջ օրվա ընթացքում՝ ոչինչ, բայց նա շարունակում էր մուրալ։

Եթե չլինեին փողոցների կեղտոտ անկյուններն ու աղբակույտերը՝ նա մի տեղ կպառկեր կմնար՝ ագահ հայացքը հառած երկնքին։ Բայց կեղտոտ անկյուններ կային, աղբակույտերում փշուրներ պատահում էին ու նա չէր պառկում որևէ տեղ մայթի վրա, այլ որոնում էր, ոտքերը հազիվ-հազ քարշ տալով։



Նա չէր մրսում, չէր շոգում, չէր հոգնում, չէր հանգստանում։ Նա միայն քաղցած էր։

Շուրջը քաղաքը եռ էր գալիս։ Մարդիկ տագնապով շտապում էին, բարձր աղաղակներով ողողում փողոցները, խմբերով ու շարքերով քայլում ու սպառնալից բացականչություններ անում։ Երգում էին։

Շատ էին երգում։

Նրա համար բոլորը միևնույն էր։ Նա քաղցած էր։ Մի անգամ նա պատահաբար ընկավ ինչ-որ շարքի մեջ։ Շարքն իր հետ առավ նրան։ Նա հրվեց, տարվեց, ակամայից նույնիսկ քայլերն արագացրեց, որովհետև նրա կողքից մեկը ասաց.

— Սա էլ մերոնցից է, սովյալներից է...— ու գըրկելով նրա ուսը՝ տարավ իր ընթացքով։

Բայց նա շուտով սկսեց ետ մնալ, որովհետև նրա նիհար ոտքերը չէին դիմանում այդ կատաղի երթին։ Նա հազիվ-հազ իրեն դուրս մղեց շարքից ու նստեց մայթեզրին։

Այդ լավ եղավ, որովհետև այստեղ նստած էր, որ նկատեց պատի տակ ընկած մի կիսակերած խնձոր։ Միայն ուտելու պահին էր, որ նրա ուղեղում մտքեր էին շարժվում, և նա այդ խնձորն ուտելու ակնթարթների ընթացքում աղոտ կերպով հիշեց, որ մի ժամանակ ինքը գյուղում ուտում էր հաց ու խնձոր և որ դա շատ սովորական ու հասարակ բան էր։ Այդ հիշողությունը նրան ո՛չ տխրեցրեց, ո՛չ էլ ուրախացրեց, այլ ավելի սրեց նրա մեջ քաղցը և խնձորի միջուկը կորիզների հետ միասին հնարավորին չափ դանդաղ ծամելով, նա վեր կացավ ու գնաց կայարանի կողմը։

Հեռու չէր կայարանը։

Կայարանը այն վայրերից էր, ուր երբեմն աղբի մեջ հետաքրքիր փշրանքներ էին գտնվում, իսկ մի անգամ կայարանում նրան առաջարկեցին բեռ վերցնել ու տանել մինչև կառքը։ Այդ օրը նա մի քանի սև գրոշ ստացավ և հաց գնեց։

Դրանից հետո այդպիսի բան չպատահեց։ Կայարանում քարշ էին գալիս իրենից ուժեղները, և նրանցից մեկը մինչև անգամ մի օր քիչ մնաց նրան ծեծեր։

Բայց միևնույն է, կայարանը հետաքրքիր վայրերից մեկն է։

Չնայած որ վերջին ամիսների քաղցած դեգերումների մեջ ամենացավալի դեպքը պատահել է կայարանում։ Մի անգամ մի արկղ տվեցին նրան։ Պետք է տաներ կայարանից քիչ այն կողմ սպասող ավտոմեքենայի մոտ։ Ուրախությունից, սովից ու հոգնածությունից շնչակտուր, նա արկղը տեղ հասցրեց, բայց հենց այդ միջոցին փողոցի անկյունից կրակոցներ լսվեցին։ Արկղի տերը հարձակվեց նրա վրա, արկղը խլեց ու նետվելով մեքենան, վարորդին հրամայեց.

— Արա՛գ... Շուտ...

Մեքենան սլացավ, ու նա ոչինչ չստացավ։ Կրակող մարդիկ զայրագին աղաղակներով շրջապատեցին նրան, հարցուփորձ էին անում։ Նա ցավից ու տանջանքից բոլորովին հիմարացել էր ու ոչինչ չէր հասկանում։ Վերջապես, երբ սկսեց հուսահատությունից բառաչել՝ ձեռ քաշեցին նրանից։

Նա արդեն լաց լինել էլ չէր կարողանում։ Նա բառաչում էր...

Ինչ-որ մեկն ասաց.

— Իշի բոլը առել՝ լաց է լինում...

Նա չհասկացավ էլ, որ այդ իրեն էր վերաբերում։ Նա տասնվեց տարեկան էր, բայց հիմա այդ էլ չգիտեր։

Իսկ գիշերները երբեմն երազներ էր տեսնում։ Տեսնում էր մոռացված բաներ։ Խմորով լիքը փայտե մեծ տաշտ։ Թավամազ, կոտրտված մի կատու. երևի իրենց կատուն էր։ Այգու չափարի տակ՝ մի սպիտակ ձու։ Երազում տեսնում էր, որ մի բարձր բլուրի վրա է գտնվում։ Պառկել է՝ գլուխը դրած ոչխարի փափուկ մեջքին։ Հետո հանկարծ ոչխարը ոտքի է կանգնում ու ինքը վեր է թռչում տեղից։ Շուրջը, ցածում մինչև հեռու-հեռուները կանաչ մարգագետիններ են։ Շատ ոչխարներ են արածում։ Եվ իրենց ոչխարը փախչում է։ Մեկ ուզում է վազել հետևից հասնել, բայց միտքը փոխում է. ինչու՞ վազել, երբ կարող է պարզապես թռչել։ Նա մի թեթև շարժում է անում ու բարձրանում է օդ։ Օդի միջով ազատ, հանգիստ սավառնում է, իսկ ցածում կանաչ մարգագետիններ են...



Կայարանում հրմշտոց էր։ Մարդիկ շտապում էին։ Ընդհանրապես, չգիտես ինչու՞, բոլորը շտապում են, շտապում...

Այդ օրն ընդհանրապես իրարանցումն արտակարգ էր։ Բայց նա ոչինչ չէր տեսնում, որովհետև քայլում էր՝ գլուխը կախ, ոտքերի տակ նայելով։ Վազվզելիս մարդիկ փշրանքներ ավելի շատ են թափթփում։

Ու մեկ էլ հանկարծ նա մեխվեց տեղում։

Նա կանգ էր առել դեղին, խոշոր գնդերով լցուն մի զամբյուղի առաջ։ Նարինջ։ Չիմացավ, թե որքան կանգնեց՝ համարյա սոսկումով լի հայացքը հիպնոսվածի նման զամբյուղին մեխած։ Նարինջները՝ խոշոր, դեղին, մագնիսի նման քաշում էին նրան...

Նա ահով կռացավ ու մեկը վերցրեց։ Հաճելի սառն էր այդ դեղին բուրավետ գունդը։ Նա չըթռցրեց, այլ վերցրեց։

Ոչ ոք չխանգարեց նրան ու թվաց, թե ինքը կարող է բոլոր նարինջները մեկ-մեկ վերցնել։ Նա վերցրած նարինջը գցեց շալվարի գրպանը, որի հատակը մինչև գետին էր հասնում. այդ գրպանն իր պատմությունն ուներ... և նորից կռացավ ու մի նարինջ էլ վերցրեց... ու միանգամից ամեն ինչ մթնեց, շարժվեց. Նրան խփեցին, հրեցին, քաշեցին, նրա վզակոթը սեղմեցին.

— Գո՛ղ, ավազա՛կ, ոստիկա՜ն, ոստիկա՜ն...

— Ա՜խ, այս ավազակները...

— Ե՞րբ պետք է վերջապես կարգ ու կանոն լինի...



— Ոստիկա՜ն…

Ու նրա թևից կոպտորեն քաշելով մեկը տարավ։ Այդ արդեն ոստիկանն էր։

Ոստիկանը քարշ տալով նրան, քթի տակ մրթմրթում էր. «Էս խառը ժամանակ դու էիր պակաս… Հիմի ես ի՞նչ անեմ… Ես քեզ ու՞ր տանեմ…»

Այսպես խոսելով, նա, այնուամենայնիվ, քարշ էր տալիս բռնվածին։

— Ես քեզ մի քիչ էլ այն կողմ կտանեմ ու բաց կթողնեմ… Քո հերն էլ անիծած։ Հիմի ես իմ գըլխի դարդն եմ…

Այդ ժամանակ լսվեց.

— Հաբարդա՜, հաբարդա՜…

Հինգ-վեց հրացանավորներ շրջան կազմած տանում էին մի խումբ մարդկանց։ Նրանք շատ էին շտապում. նրանք համարյա վազում էին։

Նրանց կողքով, ատրճանակը ձեռքին, գնում էր սպան։

Հանկարծ ոստիկանի դեմքը փայլեց ուրախությունից.

— Պարո՜ն սպա, պարո՜ն սպա…

— Ի՞նչ կա,— արհամարհանքով հարցրեց սպան, առանց կանգ առնելու։

— Ես սրան բռնել եմ,— ասաց ոստիկանը։

— Ի՞նչ անենք… բռնել ես, տար ոստիկանատուն…

— Ոստիկանատու՜ն…— ոստիկանը դառն քմծիծաղ տվեց և քայլերն արագացնելով հետևից քարշ տվեց տղային։— Ո՞ր ոստիկանատունը կըհրամայեիք տանել…

— Իսկ սա ո՞վ է, սրանցից հո չի՞,— խեթ նայելով հարցրեց սպան։

— Ասում է՝ սրանցից չի։ Բա ի՞նչ է, որ դրանցից չի։ Այն էլ ի՜նչ ավազակն է…

Սպան մի ակնթարթ կանգ առավ ու հայացքով չափեց տղային։

— Դե լավ, վերցնենք սրան, հետո կպարզենք…

— Շնորհակալություն, պարո՛ն սպա,— թեթևացած հառաչեց ոստիկանը…

Նրա համար ամեն ինչ միևնույնը կլիներ, եթե միայն այս խումբը այդպես չշտապեր։



Նրանք ուղղակի կարծես փախչում էին։ Լավ է, որ շուտ տեղ հասան, և այդ կատաղի վազքը դադարեց. եթե քիչ էլ տևեր՝ նա անպայման վայր կընկներ։

Կանգնեցրին մի վագոնի առաջ։ Ու նրանց արագ-արագ ներս հրեցին։

Վագոնը մի փոքր, փոշոտ, ցանցապատ պատուհան ուներ, որից լույսը հազիվ էր թափանցում։

Դուռը փակեցին։

Նա վայր ընկավ։

Բոլորը նստոտեցին վագոնի հատակին։

Հետո կամաց-կամաց մարդկանց աչքերը կիսախավարին ընտելացան, ու նոր նկատեցին, որ այդ շարժական խուցը մի փոքրիկ պատուհան էլ ունի, որով իրենք կարող են կապվել հարևան բաժանմունքի հետ։ Այդտեղ նրանց ուղեկցող զինվորներն էին գտնվում։

— Էս վեց հոգու մահանայով,— ասում էր զինվորներից մեկը,— մենք էլ վեց հոգով գլուխներս լավ պրծացրինք։ Հիմա էստեղ, էսքան խառը… մի խոսքով, մնալու տեղ չի. տղա ես՝ պիտի ճղես…



— Արդեն վեց չեն՝ յոթ են,— ծուլորեն ասաց մեկը:

— Վեց են թե յոթ... մի հաշիվ է...

Այդ միջոցին գնացքը շարժվեց:

— Դու ո՞վ ես,— հարցրեց տղային բանտարկյալներից մեկը:

Տղան նայեց իրեն դիմողին: Նա ոչինչ չէր հասկանում ու ոչինչ չէր տեսնում: Նա ուղղակի բնազդաբար նայեց իր հետ խոսողի կողմը:

— Լեզու չունե՞ս... ի՞նչ ազգից ես,— միջամտեց մեկ ուրիշը:

Այդ մեկ ուրիշը խոսքերը շպրտեց կոպտությամբ, մի տեսակ, արհամարհանքով: Նա, որ ըսկսել էր խոսակցությունը, ասաց.

— Սա պարզապես քաղցած տղա է:

Մի որոշ ժամանակ լռություն տիրեց:

Գնացքը հետզհետե արագացնում էր ընթացքը: Տղան աչքերը փակեց: Այսպես լավ էր: Թող իրեն չանհանգստացնեն: Ի՞նչ է պետք՝ իրեն... Նա շարժվեց տեղում, ավելի հարմար դիրք ընդունեց: Մարդ այսպիսի ժամանակ գոնե մի լավ մտածի կամ հիշի:

Ոչինչ չկար գլխում: Ոչինչ չկար հյուծված ուղեղի այն մասում, ուր հավանորեն հիշողությունները են լինում: Բայց չէ, մի բան կար: Տղան մինչև անգամ մթության մեջ փակ աչքերով ժպտաց:

Այս ամիսների ընթացքում նա մի քանի օր կուշտ է եղել: Մի քանի օր այնքան կուշտ է եղել, որ նրան թվացել է, թե կյանքը արդեն կարգի է ընկնում և որ իր համար լավ ժամանակներ են սկսվել:



... Նա աղերսող հայացքով կանգնած էր մայթին: Մի կին նրան մոտեցավ:

Դու ուտե՞լ ես ուզում,— հարցրեց այդ կինը:

Քիչ մնաց լաց լիներ: Համբացած նայեց իրեն դիմողին:

— Հետս եկ,— ասաց կինը:— Ես քեզ գործ կտամ, եթե անես՝ ուտելիք կստանաս...

Նա հետևեց կնոջը:



(Շարունակելի)

# ԵՐԵՎԱՆԻ ԼՈՒՅՍԵՐԸ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Աստղերի պես երամ-երամ
Աչքով անում, կանչում են ինձ,
Հազարաձև, հազարերանգ
Երևանի լույսերը ջինջ:

Փողոցներում լույսի կարկաչ.
Լույսեր ճերմակ, լույսեր կարմիր...
Լապտերներ կան սյունից կախված,
Լապտերներ են «ցերեկային»:

Կան կրակներ քանի՜ գույնի,
Քանի՜ ձևի... լայն ու երկար,
Գլանաձև, քառանկյունի,
Սնկանման լապտերներ կան:

Մերթ նարինջ են, մերթ էլ կսկաչ,
Մերթ երկվորյակ քույրն են լուսնի...
Անցումների եզրին կանգնած՝
Ցնցուղներ են մաղում լույսի:

Կան և շարժուն, շրջիկ լույսեր՝
Ավտոների աչքից թռչող.
Ճամփաներն են դարձնում լուսե,
Մութը կիսում լույսի թրով:

Մեր քրտինքի վառ գիծերն են՝
Վրան՝ շողուն շափյուղաներ,
Մեր հավատի հակինթներն են՝
Դարձած լույսի շատրվաններ:

Սևանից են գալիս քաղաք,
Աչիկներն են քույր Սևանի,
Գիշերների աչքերն արթուն,
Փարոսները Երևանի:

# Շաբաթ յոթ կիրակի
(Հեքիաթ)

ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



Այնպես պատահեց, որ քաղաքի ամենասովորական տղաներից մեկը՝ Վաչիկը դարձավ քաղաքապետ: Ո՞նց թե: Ախր նա ոչնչով աչքի չէր ընկնում: Որ ասես գերազանցիկ էր, ճիշտ չի լինի: «Երկուս» ու «երեք» էր տուն բերում: Որ ասես ուժով էր հայտնի, ոչ ոք չի հավատա: Իսկ եղե՞լ է մի օր, որ կռիվ անի ու հաղթի: Ընդհակառակը, նա հա ծեծ է կերել: Դեռ ավելին, Վաչիկը հայտնի էր իր ծուլությամբ: Նրա միակ երազանքն այն էր, որ շաբաթը յոթ կիրակի ունենա, ոչ ոք չաշխատի, ոչ ոք չսովորի, ուտեն, խմեն, քեֆ անեն...

Եվ ահա այս նույն Վաչիկը դարձավ քաղաքապետ: Հո կատակ բան չի՞, քա՛-ղա՛-քա՛-պե՛տ...

Ժողովուրդը որոշեց փառք ու պատվով Վաչիկին տանել քաղաքապետարան, սակայն նա հրաժարվեց: Մտածեցին, որ համեստ տղա է և ուզում է իր նախկին տանը ապրել: Բայց դու մի ասա, մտքինն ուրիշ էր:

— Սրանից հետո քաղաքապետարանը կլինի մեր դպրոցը,— հանդիսավորությամբ հայտարարեց նա:

— Դպրո՞ցը: Բայց չէ՞ որ դպրոցն զբաղված է:

— Զբաղված չի,—քմծիծաղ տվեց Վաչիկը:—Վաղվանից դաս չկա:

Ինչ արած, եթե քաղաքապետն ասաց, ուրեմն, օրենք է: Դպրոցը դարձրին քաղաքապետարան, իսկ աշակերտներին ասացին, որ գնան տուն:

Սակայն աշակերտները չէին ուզում ցրվել:

— Վաչիկի՜ն, Վաչիկի՜ն,— գոռում էին նրանք:— Թող դո՛ւրս գա Վաչիկը:

Հպարտ-հպարտ երևաց Վաչիկը, երեսին՝ ինքնագոհ ժպիտ: Աշակերտները վրա թափվեցին, ձեռքից ձեռք խլեցին, ապա ուսերից վեր բարձրացրին ու մի քանի անգամ օդ նետեցին:

— Ուռա՜,— գոռում էին չորս կողմից:

— Վաչի՛կ ջան, միտքդ չփոխես,— խնդրում էր մեկը:

— Վաչի՛կ ջան, գոնե մյուս օրվանից փակեիր,—ասում էր մեկ ուրիշը,— չե՞ս հիշում, ախր, աշխարհագրությունը նույն դասն էր թողել:

— Վաչի՛կ ջան, մենք քեզ չենք մոռանա,— ավելացնում էր մեկ ուրիշը:

Վաչիկը թույլ տվեց, որ երկար ծափահարեն իրեն, ապա ծանրակշիռ դանդաղությամբ բարձրացրեց ձեռքը և լռություն պահանջեց:

— Հանգիստ տուն գնացեք,— ասաց նա,— և իմացեք, քանի ես եմ քաղաքապետը, ձեր մատին ոչ ոք չի դիպչի: Ոչ ոք չի կարող ձեզ դպրոց ուղարկել:

Ուրիշ էլ ի՞նչ էր պետք: Աշակերտները ուրախ-զվարթ տուն վերադարձան:

Վաչիկը մտավ իր առանձնասենյակը, որ նրա նախկին դասարանն էր: Հրամայեց գրասեղանը դուրս տանել և բերել իր աշակերտական նստարանը: Այնպես էլ արեցին: Հսկա դասարանում Վաչիկը մենակ նստել էր նստարանին: Նստեց, նստեց, միտք արեց և մի փայլուն որոշում ծագեց ուղեղում: Արի այնպես անեմ, որ այս մեծերն էլ չաշխատեն: Ամբողջ օրը աշխատանք, աշխատանք, հերիք եղավ: Բացի այդ, եթե իմանան, որ իրենց երեխաներին արգելված է սովորել, մեկ էլ տեսար աղմուկ բարձրացրին: Իսկ եթե իրենք էլ չաշխատեն, չեն համարձակվի այդպիսի բան անել: Եվ նա գոհ ժպտաց իր խորամանկության համար:

Հենց նույն օրը արտակարգ լուրը կայծակի արագությամբ տարածվեց ամենուրեք: Եվ այս անգամ ինչքան հայր ու մայր կար քաղաքում, հավաքվեցին դպրոցի բակում և «ուռա» գոռացին՝ ի պատիվ Վաչիկի:

— Թող դո՜ւրս գա, դո՜ւրս գա մեր իմաստուն Վաչիկը:

Վաչիկը դուրս եկավ պատշգամբ, խոնարհվեց, ինչպես դերասաններն են անում և համեստորեն սպասեց, մինչև որ ծափահարությունները լռեն:

— Վաչի՛կ ջան, մենք այստեղ ենք,— բազմության միջից գոռացին նրա հայրն ու մայրը:

Բոլորն էլ շրջվեցին նրանց կողմը, նախանձով նայեցին, ապա սկսեցին իրար հրմշտել, որպեսզի մոտենան, սեղմեն նրանց ձեռքը և շնորհավորեն այդպիսի լավ և խելացի երեխա ունենալու համար:

— Օրինակ վերցնել Վաչիկի հայրիկից ու մայրիկից, տեսե՛ք, թե ինչպիսի երեխա են պահել ու մեծացրել,— ճառ ասաց ինչ-որ մեկը:

Ապա մեկ առ մեկ Վաչիկին մոտեցան ուսուցիչները, հիացմունքով նայեցին նրան, համբուրեցին ճակատը, իսկ նրանցից մեկը, թվաբանության ուսուցչուհին, որ միշտ «երկուս» էր նշանակել նրան, լաց եղավ ու ասաց.

— Ների՛ր մեզ, Վաչի՛կ, մենք չգիտեինք, որ դու այսքան խելացի և շնորհալի տղա ես: Սխալվել ենք մենք:

— Ոչինչ, ընկե՛ր Վարդապետյան, լաց մի՛ եղեք: Դուք դեռ կարող եք ձեր սխալն ուղղել:

— Այո՛, այո՛, դու արժանի ես միայն «հինգերի»: Բայց ինչպե՞ս ուղղենք մեր սխալը, երբ քո հրամանով փակվել են դպրոցները:

— Ճիշտ է,— շփոթվեց Վաչիկը, սակայն անմիջապես գտավ ելքը,— սրանից հետո միայն ինձ համար բաց կլինի դպրոցը: Ես պատրաստ եմ իմ բոլոր դասընկերների փոխարեն տանջվել:



— Ականիվ ես դու, Վաչի՛կ, մենք բարձր ենք գնահատում քո ազնվությունը:

— Բայց դաս հարցնել չկա,— պայման դրեց Վաչիկը,— ինչքան ուզում եք տըվեք, բայց մի՛ հարցրեք:

— Քեզ նույնիսկ ամոթ է դաս հարցնել, Վաչի՛կ, չէ՞ որ դու մեր քաղաքապետն ես:

— Ուռա՜ քաղաքապետին,—գոռաց բազմությունը:

Ապա ելույթ ունեցավ դպրոցի դիրեկտորը և առաջարկեց, որ այսուհետև անհարմար է այսպիսի տղային «Վաչիկ» կոչել, նրա անունը պետք է լինի «Վաչէ»:

Սա մեծահասակների ամենամեծ գնահատականն էր, չէ՞ որ սրանով Վաչիկին ընդունում էին իրենց շարքերը:




— Սիրելի՛ ուսուցիչներ,—հուզված սկսեց Վաչեն,— ես չգիտեմ ինչպես արտահայտեմ իմ շնորհակալությունը: Ձեր արած ազնվության դիմաց ես թույլ կտամ, որ երբեմն նկատողություն անեք ինձ:

— Ո՛չ, ո՛չ, ո՛չ, ի՞նչ ես ասում,— միաբերան առարկեցին ուսուցիչները:

— Ես կպահանջեմ,— ջղայնությունից ծղրտաց Վաչեի ձայնը,— իսկ հիմա բոլորդ էլ ցրվեք: Ով ինչ ուզում է, թող անի: Տոն է սրանից հետո:

Եվ, իսկապես, այդ օրվանից սկսեցին տոները: Մարդիկ քնում էին մինչև կեսօր, իսկ հետո փողոցները լցվում էին ծայրից ծայր և դատարկվում միայն կեսգիշերից անց:

Ոչ ոք տանը չէր ուտում: Սեղանները հանում, դնում էին մայթերի վրա, իրար կպցնում, հացար ու մի տեսակ համով ուտելիքներ դնում վրան և, այդ ընդհանուր, հսկա սեղանի շուրջը նստած քեֆ էին անում թե՛ մեծերը, թե՛ փոքրերը:

Փողոցներում ամեն օր դիմակահանդես էր: Առջևից անցնում էր նվագախումբը, իսկ ետևից գնում էին դիմակավորները, երգում ու պարում: Երկինքը լցված էր փուչիկներով ու ժապավեններով:

Որոշ փողոցներ վերածվել էին կինոթատրոնի: Փողոցի ծայրին կախում էին մի հսկա էկրան, որի վրա անընդհատ ֆիլմեր էին ցուցադրում՝ արևը մայր մըտնելուց հետո: Մարդիկ բացօթյա կինոթատրոն էին գալիս իրենց աթոռներով, իսկ փողոցի բնակիչները պարզապես պատշգամբ էին ելնում ու այնտեղից դիտում: Եվ, իհարկե՝ ձրի: Ամեն ինչ՝ ձրի:

Ամենուրեք պատերի վրա խոշոր տառերով գրված էր. «Կեցցե՛ նոր քաղաքապետը, կեցցե՛ մեր Վաչեն»:

Իսկ կենտրոնական զբոսայգում կանգնեցրին նրա մեծ արձանը: Միայն թե այդ կապակցությամբ մի անսպասելի դժվարություն ծագեց. իսկ ո՞վ պիտի քանդակեր արձանը, ո՞վ պիտի հսկա քար բերեր, ո՞վ պիտի տաշեր այդ հսկա քարը... Չէ՞ որ դա նշանակում է աշխատել: Ա՛յ քեզ բան: Բա ի՞նչ անեն: Ախր, Վաչեն շատ էր ուզում, որ արձանը կանգնեցվի: Իսկ եթե մի



բան շատ ես ուզում, ելք միշտ էլ կգտնվի:

— Դա ձեզ համար ոչ թե աշխատանք կլինի,— ասաց նա,— այլ հաճույք: Այնպես չէ՞:

— Այո՛, այո՛,— համաձայնեցին բոլորը,— իհարկե, հաճույք է:

— Եվ ընդհանրապես արվեստը հաճույք է,— խելացիորեն եզրափակեց քաղաքապետը:

Քաղաքի համբավը արագորեն տարածվեց: Աշխարհի բոլոր թերթերը հոդվածներ նվիրեցին քաղաքի կյանքին, տպագրեցին լուսանկարներ և հարցազրույց ունեցան շատերի հետ: Եվ շատ շուտով, աշխարհի բոլոր կողմերից ժամանեցին զբոսաշրջիկներ, հիացմունքով դիտեցին դիմակահանդես քաղաքը և տրաքեցին նախանձից:

Բայց շուտով դժբախտություն պատահեց: Քաղաքում հիվանդության համաճարակ ընկավ: Հիվանդանոցներում երկար հերթեր գոյացան: Բժիշկները ոչինչ չէին հասկանում, որովհետև հիվանդները ևս չէին կարողանում խելքը գլխին բացատրել, թե ինչ է կատարվում իրենց հետ: Ո՛չ ցավ, ո՛չ գլխապտույտ, ո՛չ ջերմություն, ո՛չ թուլություն... Բայց որ համաճարակ էր ընկել, անառարկելի էր ու անկասկած: Մարդիկ հալվում-մաշվում էին... Եվ այն էլ, պատկերացնո՞ւմ եք, այսպիսի ժամանակ:

Սակայն չնայած համաճարակին, քեֆերը շարունակվեցին: Ճիշտ է, այլևս չկար նախկին փայլը և աշխուժությունը, բայց, ոչինչ, թող անցնի այս անիծյալ հիվանդությունը, հետո այնպիսի քեֆեր անեն ո՜ր...



Այս ամբողջ պատմությունը տևեց մի ամիս:

Մի ամիս հետո դպրոցի բակում էլի հավաքվեց մի մեծ բազմություն: Այս անգամ մեծերն ու փոքրերը իրար էին խառնվել:

Վաչեն հանդիսավոր քայլերով դուրս եկավ պատշգամբ:



Չէր ուզում բակ իջնել, որովհետև դարձյալ կարող էին նրան իրար ձեռքից խլել, ուսերից վեր բարձրացնել և օդ նետել: Մեկ էլ տեսար գետին ընկավ, ինչ գործ ունես...

Բայց սա ի՞նչ բան է: Լռություն էր բակում, մի տարօրինակ լռություն: Վաչիկը շատ զարմացավ: Տեսնես ինչի՞ց են դժգոհ, էլի ի՞նչ են ուզում: Եվ հանկարծ աղմուկ բարձրացավ, չտեսնված աղմուկ: Բոլորն էլ ինչ-որ բան էին գոռում, բռունցքները օդում թափահարելով: Վաչեն վախեցած նրանց էր նայում և ոչինչ չէր հասկանում:

Վերջապես դարձյալ լռություն տիրեց և բազմության միջից առաջ եկան մի ալեհեր մարդ և մի փոքրիկ տղա:

— Մենք աշխատել ենք ուզում,— ասաց ալեհերը:

— Մենք սովորել ենք ուզում,— ասաց փոքրիկը:



— Կորչի՛ Վաչիկը,— գոռաց բազմությունը:

— Ախր ես ձեզ լավություն եմ արել,— լացակումած ասաց Վաչիկը:

— Ո՛չ, դու մեզ խաբեցիր: Դու ուզում էիր կործանել մեզ:

— Դուք, իսկապես, հիվանդ եք,— վախեցավ Վաչիկը,— հեռո՛ւ քաշվեք, կվարակեք ինձ:

— Կորչի՛ Վաչիկը,— կրկնեց բազմությունը,— նա վարակեց մեզ:

Վաչիկի միակ հույսը իր ընկերներն էին՝ դպրոցականները: Եվ նա աղերսանքով դիմեց նրանց.

— Դո՞ւք էլ, դո՞ւք էլ եք իմ դեմ:

— Մենք պահանջում ենք բացել դպրոցները:

— Պետի՛կ, որտե՞ղ ես,— սկսեց լաց լինել Վաչիկը,— Հրաչի՛կ, Սուրի՛կ, Խաչի՛կ, որտե՞ղ եք:

— Այստե՛ղ ենք,—կանչեցին զանազան կողմերից:

— Դո՞ւք էլ եք սրանց պաշտպանում:

— Այո՛:

— Բայց չէ՞ որ դուք դպրոցի ամենաանկարգ, ամենավատ սովորողներն եք,— ապշեց Վաչիկը,— քանի՞ տարի ես նույն դասարանում մնացել, Խաչի՛կ:

— Երկու:

— Եվ դո՞ւ էլ սրանց հետ ես: Ախր, ո՞նց կլինի:

— Մեկ է, դպրոց եմ ուզում...

— Եվ դո՞ւ, Սուրի՛կ... Եվ դո՞ւ, Հրաչի՛կ...

— Հա՛, մենք էլ ենք ուզում...

— Իսկ սրա՞նք ովքեր են,— հարցրեց Վաչիկը՝ ցույց տալով ընդհանուր բազմությունից անջատ կանգնած մի խումբ մարդկանց:

— Սրանք չեն ենթարկվել քո օրենքներին, սրանք աշխատել են:

— Ինչպե՛ս են համարձակվել,— վայրացավ Վաչիկը,— ո՞վ է թույլատրել:

— Բա ո՞վ է ձեզ լույս տվել,— ասաց նրանցից մեկը:

— Ո՞վ է հեռախոսներն աշխատեցրել...

— Ո՞վ է հաց թխել...

— Ո՞վ է մթերք բերել...

— Ո՞վ է փողոցները մաքրել...

— Ո՞վ է ֆիլմեր ցուցադրել...

— Ո՞վ է դիմակներ պատրաստել...

— Ո՞վ է դիմակահանդեսի շորեր կարել...

— Ինչպե՛ս թե,— ապշեց Վաչիկը,— ուրեմն, հենց իմ աչքի առա՞ջ... Ու ես չե՞մ նկատել...

— Ո՞վ է քեզ կերակրել:

— Ո՞վ է շորերդ լվացել:

— Ո՞վ է արդուկել:

— Ո՞վ է անկողինդ սարքել:

— Վաչի՛կ, էս ի՞նչ արեցիր, խայտառակեցիր խարհով մեկ...

Դա մայրիկի ձայնն էր:

— Ես հիմա քեզ ցույց կտամ:

Սա էլ հայրիկի ձայնն էր:

Եվ ահա, կարծես խուքը մեկ արած, բազմությո շարժվեց Վաչիկի վրա: Որոշել էին մեկ առ մեկ մու նալ նրան և քաշել ականջից: Էլ ակա՞նջ կմնար: Ն կպոկվեր, կամ կմեծանա՛ր, կմեծանա՛ր, կմեծանա՛

Վաչիկը վախից ճչաց:

Եվ վեր թռավ պառկած տեղից:

Ապա ծալապատիկ նստեց մահճակալին, տարակ սանքով շփեց աչքերը և նայեց չորս կողմը: Հե ժպտաց ու մտածեց. ինչ լավ է, որ փոքրիկները քաղ քապետ չեն դառնում... Եվ ինչ լավ է, որ երազ էր ս ամենը...

# ՉՂՋԻԿԻ ՀԵՔԻԱԹԸ

ՍՄՈՅԵ ՇԱՄՈ

Չղջիկն առաջ, քաջ ու արի,
Զարդն էր սիրուն հանդ ու սարի,
Նախշուն հասակ, բարի անուն,
Նրա գովքը ո՞վ չէր անում։
Խաս-խաս փետուր, աչքեր մեծ-մեծ,
Բայց թե նրան ո՞վ անիծեց,
Որ նա ընկավ այդ օրը նեղ,
Բայց չի պատմել դեռ ոչ մի տեղ։
Ահա թե դա ոնց է եղել.
Սովն էր նրան մի օր նեղել,
Տաք հացի հոտ առավ հանկարծ
Ու մարդկանց մոտ գնալ ցանկաց։
Ելավ-գնաց տխուր-տրտում,
Ահ ու վախով մտավ մի տուն։
Ու չտեսած դեռ խեղճ հավքին՝
Հաց էր թխում մի պառավ կին
Ու մատներով բարակ-բարակ,
Մեկիկ-մեկիկ դարսում արագ։
Չղջիկն ասաց.— Բարի՛ տատիկ,
Չե՞ս տա դու ինձ մի քիչ հացիկ։
Տատիկն ասաց.— Ինչու՞ չեմ տա,
Հենց ուտելու համար է դա։
Հացն ընծան է հասուն արտի,
Ինձ համար ի՞նչ, թե ով կուտի,
Բայց թե ասա՝ ու՞ր ես գնում,
Պապդ ո՞վ է, ի՞նչ ես անում,
Ի՞նչ հավք ես դու, ո՞նց է հալդ,
Թե չէ հե՞շտ է քեզ հաց տալը։—
Իսկ չղջիկը չէր իմանում,
Թե ինքն ով էր այս աշխարհում,
Խեղճն իր աչքից ընկավ մի պահ,
Ի՞նչ փորձանքի հանկարծ դիպավ.
«Էլ արդ ու զարդ, էլ շոր պես-պես,
Բայց չիմացվեց, թե ո՞վ եմ ես»։
Ինչու՞ եկավ նա մարդկանց մոտ,
Ա՜յ քեզ փորձանք, ա՜յ քեզ ամոթ։
Նրա համար մա՞հն էլ էր քիչ,
Ու նա ասաց խոսքով հակիրճ.
— Թեև չունի աշխարհը ծայր,
Բայց այն կանեմ ես երկու քայլ,
Որ իմանաս, թե ով եմ ես,
Որտեղից եմ գալիս այսպես։
Ելավ չղջիկն այդպես հերսոտ,
Ելավ գնաց մեծ արծվի մոտ,
Ասաց.— Արծիվ, սև գայլ չեմ ես,
Թռչուն եմ ես, թռչու՜ն քեզ պես։—
Նրան արծիվն աչքով չափեց,
Շուռ-մուռ եկավ ափեց-չափեց,
Նայեց դեմքին ու սև թևին,
Պատիկ-մատիկ ծույլ-ծույլ ձևին.
Ասաց.— Գա՞յլ ես, մու՞կ ես, ի՞նչ ես,
Բայց թե, եղբայր, մեր ցեղից չե՞ս։ —
Ու նա թռավ, ինչպես նետը,
Գտավ գայլին, խոսեց հետը.





*Ես մի գայլ եմ, գա՞յլ զտարյուն,*
*Մեր պապերը ցեղից են նույն։—*
*Գայլը նրան աչքով լափեց,*
*Շուռ-մուռ եկավ, ափեց-չափեց,*
*Նայեց դեմքին ու սև թևին,*
*Պստիկ-մստիկ, ծույլ-ծույլ ձևին,*
*Ասաց. — Ա՞րջ ես, մու՞կ ես, ի՞նչ ես,*
*Բայց թե, եղբայր, մեր ցեղից չե՛ս։—*

*Սիրտը մոլոր, ելավ գնաց,*
*Տեսավ մի տեղ արջին բնած,*
*Արջին մի կերպ նա արթնացրեց։*
*Բարև տվեց, ապա հարցրեց.*
*— Ամեն ինչով նման եմ քեզ,*
*Մի՞թե, քեռի, մի արջ չեմ ես։—*
*Արջը նրան աչքով լափեց,*
*Շուռ-մուռ եկավ, ափեց-չափեց,*
*Նայեց դեմքին ու սև թևին,*
*Պստիկ-մստիկ, ծույլ-ծույլ ձևին,*
*Ապա ասաց. — Մու՞կ ես, ի՞նչ ես,*
*Բայց դու, եղբայր, մեր ցեղից չե՛ս։—*
*Նա մկների դուռը գնաց,*
*Ահ ու սարսափն առավ նրանց։*
*— Մի՛ վախեցեք,—ասաց,—մկնե՛ր,*
*Ձեր ցեղի՛ց եմ ու ձեզ ընկեր,*
*Ու ձեր սերն ինձ միայն գերեց,*
*Ձեր կարոտն ինձ այստեղ բերեց։*
*Մեր հին սերը դեռ չի՞ հատել,*
*Մենք վաղու՞ց ենք հարազատներ։—*
*Ու մկները մոտիկ եկան,*

*Եկավ անգամ նրանց արքան*
*Ու չղջիկին աչքով լափեց,*
*Շուռ-մուռ եկավ, ափեց-չափեց,*
*Նայեց դեմքին ու սև թևին,*
*Պստիկ-մստիկ, ծույլ-ծույլ ձևին,*
*Ասաց. — Ա՞րջ ես, գա՞յլ ես, ի՞նչ ես,*
*Բայց թե, եղբայր, մեր ցեղից չե՛ս։—*

*Թռչուն, գազան էլ չմնաց,*
*Ամենքի մոտ ելավ գնաց,*
*Մնաց ծարավ, մնաց սոված,*
*Մաշվեց գլխարկն այն իր գոված,*
*Մաշվեց շապիկն ու հին չուխան*
*Ու ողջ հագուստն իր խաս ու խամ։*
*Սիրտը տխուր, լքված ու խեղճ,*
*Նա չի գալիս էլ մարդկանց մեջ,*
*Միայն գիշերն է մռն գալիս,*
*Բարև-մարև էլ չի տալիս,*
*Ամաչում է, խեղճն ամաչում,*
*Որ ինքն իրեն չի՛ ճանաչում։*

*Փոխադր. Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆԻ*
*Նկ. ԱՆԱՏՈԼԻ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

Հոկտեմբերիկների խմբակները կազմակերպվում են դպրոցներում՝ 1—3-րդ դասարաններում: Դրուժինայի խորհուրդը 1—3-րդ դասարաններին կցում է մեկական պիոներական ջոկատ, հանձնարարելով ջոկատի պիոներներին դասվարների հետ միասին հոկտեմբերիկների խմբեր կազմակերպել: Իսկ ամբողջ հոկտեմբերիկական խմբի աշխատանքները կազմակերպելու և ղեկավարելու համար մի կոմերիտականի կամ կոմերիտուհու (կարելի է նաև լավագույն ակտիվիստ պիոների) առաջադրում են հոկտեմբերիկավար:

Հոկտեմբերիկներին պետք է հաստատել դրուժինայի խորհրդի նիստում: Յուրաքանչյուր հոկտեմբերիկական խումբ բաժանվում է աստղիկների, որի կազմի մեջ կարող են ընդգրկվել 5—7 երեխա: Խորհուրդ է տրվում աստղիկի մեջ ընդգրկել նույն բակում, շենքում, շքամուտքում և իրար հետ մտերիմ երեխաների, որը մեծ նշանակություն ունի աստղիկի կոլեկտիվի անդամների կապի և համերաշխության գործում: Հենց այս առաջին հանդիպման ժամանակ երեխաները պետք է ծանոթանան իրենց շեֆ պիոներական ջոկատի այն լավագույն պիոներների հետ, որոնք դարձել են իրենց աստղիկների աստղավարները: Երեխաները այդ օրը ծանոթա-

# ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ ՀՈԿՎԱՐՆԵՐԻՆ ԵՎ ԱՍՏՂԱՎԱՐՆԵՐԻՆ

նում են հոկտեմբերիկների կանոնների հետ:

Հոկտեմբերիկական խմբերի ստեղծմանը պետք է տալ անհրաժեշտ հանդիսավորություն և տոնական բնույթ: Կարմիր աստղիկի հանձնումը երեխաներին, որով և հիմնադրվում է հոկտեմբերիկների խմբակը, լավ կլինի կազմակերպել հոկտեմբեր ամսին:

Այդ հանդիսավոր օրը շեֆ պիոներական ջոկատը հոկտեմբերիկական խմբին է նվիրում դրոշակիկ՝ հետևյալ մակագրությամբ. «Հոկտեմբերիկները Լենին պապի թոռնիկներն են»:

Երեխաների համար այդ նշանավոր օրը պետք է ավարտվի ուրախ պարերով, խաղերով ու երգերով:

Հոկտեմբերիկների հետ աշխատողների տարբերիչ նշանները քիչ ավելի նեղ են պիոներականից, նրանց վրա ամրացվում են դեղին աստղիկներ: Այսպես, օրինակ՝ աստղիկի ղեկավարը կրում է կարմիր գույնի մեկ շերտ՝ մեկ դեղին աստղիկով, հոկտեմբերիկավարը կրում է կարմիր գույնի մեկ շերտ՝ երկու դեղին աստղիկով, իսկ դրուժինայի խորհրդի կողմից կցված պատասխանատու պիոները կրում է կարմիր գույնի երեք աստղիկով մի շերտ՝ ձախ թևի վրա: (Կարմիր շերտերը և աստղիկները պատրաստում են իրենք՝ երեխաները):

## ՀՈԿՎԱՐԻ ԵՎ ԱՍՏՂԱՎԱՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

Աստղավարը և հոկվարը պետք է օգնեն երեխաներին հասկանալու, որ հոկտեմբերիկները Իլյիչի թոռնիկներն են, որ նրանք պատրաստվում են դառնալու պատանի լենինյաններ:

Հոկտեմբերիկական խմբերում, աստղիկում հոկտեմբերիկը սովորում է գործել ոչ թե միայնակ, այլ՝ ընկերների հետ:

Հոկվարը և աստղավարը պետք է երեխաների մոտ ստեղծեն պարզ, տպավորիչ պատկերացում մեր հայրենիքի, հեղափոխության, Վ. Ի. Լենինի, շրջապատող աշխարհի մասին: Նրանց մեջ պետք է զարգացնել վարվեցողության այնպիսի սովորույթներ, ինչպիսիք են՝ պայքարը ճշմարտության համար, ձգտումը դեպի վեհը, գեղեցիկը, մեծերին հարգելը, չներել նրանց, ովքեր ստում են, կեղծում, կոպիտ են վարվում և վիրավորում են փոքրերին, ովքեր ոչնչացնում են անմեղ կենդանիներին, փչացնում բնության գեղեցկությունները:

Հոկվարները և աստղավարները պետք է կոնկրետացնեն, պարզություն ու գրավչություն մտցնեն նրանց համար կազմակերպված յուրաքանչյուր միջոցառման մեջ: Պետք է այնպես անեն, որ սանիտարը, ծաղկաբույծը, արագընթաց-կապավորը որոշակի պատկերացնեն իրենց անելիքները:

Ժամանակի հետ հանձնարարությունների շրջանակը մեծանում է:

Հոկտեմբերիկական խմբի երկրորդ տարում ծնվում են «խաղերի ու զվարճալիքների պահարանի տնօրեն», «Ուրախ գրադարանի վարիչ» և ուրիշ հանձնարարություններ: Հոկտեմբերիկներին այդ հանձնարարությունները տրվում են մեկ կամ երկու շաբաթով և անընդհատ փոփոխվում են: Դաստիարակչական մեծ նշանակություն ունի հոկտեմբերիկական խմբերի, ինչպես նաև աստղիկների անվանակոչումը: Այսպես օրինակ, կարելի է անվանակոչել ծաղիկների անուններով:

Հոկտեմբերիկական խմբերը անպայման պետք է ունենան ալբոմներ և հուշալբոմներ՝ իրենց խմբի տարեգրության համար:

Բոլոր միջոցառումները պետք է նպաստեն հոկտեմբերիկների ուսման առաջադիմության բարձրացմանը: Լավ կլինի խմբերում կազմակերպել «Ինչուկ» ակումբը: Կազմակերպել և անցկացնել «Ցտեսություն, այբբենարան», «Արդյոք մենք լա՞վ ենք հաշվում, գրում ու կարդում» հանդեսներ:

Երկրորդ, երրորդ դասարանների հոկտեմբերիկական խմբերը պետք է հաճախակի ներկա գտնվեն շեֆ պիոներական ջոկատի հավաքույթներին ու միջոցառումներին, ծանոթանան հերոս պիոներների կյանքի ու գործունեության, նրանց կատարած սխրանքների հետ, սովորեն պիոներական երգեր, պարեր ու ոտանավորներ, ծանոթանան պիոներական խորհրդանիշերի՝ կարմիր դրոշի, վզկապի, հուշադրոշի, կրծքանշանի, պիոներական անհրաժեշտ իրերի՝ շեփորի, թմբուկի հետ: Այս բոլորը հոկտեմբերիկների կյանքում կստեղծի է՛լ ավելի պարզ ու հստակ պատկերացում պիոներական կազմակերպության գործունեության մասին, որի շարքերը նա պետք է ընդունվի:

*ՍԱՐԳԻՍ ԲԱԴԱԼՅԱՆ*




## ՀՍԿԱՆԵՐ ԵՎ ԹԶՈՒԿՆԵՐ

Հսկան չէր կարողանա մտնել մեր տունը, իսկ թզուկը կանցներ բանալու անցքով: Մենք՝ մարդիկս, լիլիպուտներ կլինեինք հսկաների աշխարհում և հսկաներ՝ լիլիպուտների երկրում: Բայց գոյություն ունե՞ն արդյոք հսկաներ և թզուկներ:

Գուլիվերի լիլիպուտներն ու Ջյունանուշի թզուկները միայն հեքիաթներում են ապրում: Բայց մեր աշխարհում էլ կան հսկայական և շատ փոքր բաներ:

Կատուն մկան համար սարսափելի, անեղ հսկա է, մինչդեռ մեր ծնկներին էլ չի հասնում: Մեր կողքին և՛ մուկը, և՛ կատուն գրեթե հավասարաչափ փոքր են: Բայց և՛ կատվի, և՛ մկան համար մենք՝ հսկաներ ենք թվում: Մուկը կատվի առաջ ընդամենը թզուկ է, բայց զատկի աչքերում նա հսկա է երևում: Չէ՞ որ զատիկը մկան թաթիկից էլ փոքր է:

Անհարթ ճանապարհը զատիկի համար բարձր ժայռերի, խոր անդունդների երկիր է, իսկ ծաղիկներով ծածկված մարգագետինը՝ խուլ անանցանելի անտառ: Այդպիսի աշխարհում մարդիկ հսկաներ են թվում:

Իսկ զատի՞կը: Խոտերի թավուտում եռանդով վազվզող մրջյունների և տերևների տակ թաքնված պստիկ բզեզիկների կողքին նա էլ հսկա է, իսկ եթե նայենք միկրոսկոպի միջով, զատիկը հսկա կդառնա: Միկրոսկոպի տակ մեր առաջ կբացվի զատիկից շատ և շատ անգամ փոքր կենդանի արարածների աշխարհ: Այնքան փոքր, որ անզեն աչքով դրանց տեսնել չի կարելի: Դրանք շատ տարօրինակ կենդանիներ են: Դրանք ո՛չ աչք ունեն, ո՛չ բերան, ո՛չ ձեռք, ո՛չ ոտք, բայց և այնպես դրանցից յուրաքանչյուրը շարժվում է: Եվ դրանց մեջ էլ կան այնպիսիները, որոնց կարելի է հսկա կամ թզուկ անվանել:

Մենք լիլիպուտ ենք երևում փղի մոտ: Բայց փիղն ինքը թզուկ է ծովերի հսկայի՝ երկնագույն կետի մոտ: Երկնագույն կետը գետային տրամվայից էլ մեծ է:

Ուրեմն ո՞վ է վերջապես հսկա, ո՞վ թզուկ: Մի դեպքում՝ մեկը, մյուսում՝ մեկ ուրիշը:

Մեր ամբողջ աշխարհը թզուկ կթվա, եթե նրան նայենք ինքնաթիռից, մեծ բարձրությունից: Մարդիկ վերևից նման են փոքրիկ ավազահատիկների:

Իսկ ավելի մեծ բարձրությունից հսկա երկրագունդը երկնագույն փայլով հազիվ նկատելի կետ կդառնա:

Իսկ հսկա՞ է արդյոք երկրագունդը: Կուրացուցիչ արեգակի մոտ նա միայն թզուկ է:

Բայց մարդը համենայն դեպս հսկա է, որովհետև նա ընդունակ է ճանաչելու տիեզերքի միլիոնավոր և միլիոնավոր գաղտնիքները:



## ՁՄԵՌ ԵՎ ԱՄԱՌ

Մարտի 21-ը բնության մեծ տոնն է: Կիսահալ ձյան տակից դուրս են գալիս առաջին ծաղիկները՝ ձնծաղիկը, մանուշակը, դեղնածաղիկը: Ծառերի վրա բողբոջներ են երևում, հնչում է թռչունների ուրախ ճռվողյունը: Օրերն սկսում են երկարել: Եկել է գարունը:

Հունիսի 22-ին սկսվում է տարվա նոր եղանակը՝ ամառը: Մանկական հրապարակներում, լողափերում, լողարաններում աշխուժություն է տիրում: Գընացքները մարդկանց տանում են դեպի գետերը, ծովերը, անտառները: Օրը 15-16 ժամ է տևում: Գիշերները կարճ են:

Սեպտեմբերի 23-ը աշնան ըսկիզբն է: Ինչպես և մարտի 21-ին, սեպտեմբերի 23-ին ցերեկն ու գիշերը հավասար են լինում: Հասնում են խնձորն ու տանձը, սկսվում է խաղողահավաքը:

Դեկտեմբերի 22-ին արևը երկընքում միայն 8 ժամ է երևում: Սկսվում է ձմեռը, որն իր հետ, ինչպես տարվա ամեն մի ուրիշ եղանակ, բերում է իր ուրախությունները:

Երկրի հարավային կիսագընդում, օրինակ, Ավստրալիայում, Հարավային Ամերիկայում, մարտի 21-ին սկսվում է աշունը, հունիսի 22-ին՝ ձմեռը, սեպտեմբերի 23-ին՝ գարունը, դեկտեմբերի 22-ին, երբ մեզ մոտ արդեն պատրաստ են սահնակներն ու չմուշկները, այնտեղ մարդիկ

իրենց օրերն անց են կացնում լողափերում։

Հյուսիսային կիսագունդը տարածվում է հասարակածից մինչև Հյուսիսային բևեռ։ Բոլոր երկրներում այստեղ տարվա եղանակները միաժամանակ են սկսվում։ Բայց ամեն տեղ չէ, որ



գարունն ու ամառը միանման են։ Հյուսիսային բևեռին մոտ ամռանն էլ զով է, իսկ հասարակածի շրջանում նույնիսկ ձմեռը վառելիք չեն վառում, առանց այն էլ տաք է։

Օրվա տևողությունը նույնպես ամեն տեղ նույնը չէ։ Հասարակածի մոտ ամբողջ տարվա ընթացքում ցերեկը հավասար է 12 ժամի։ Մեզ մոտ ցերեկն ամռանը 16 ժամ է տևում, ձմռանը՝ 8 ժամ։ Մերձբևեռային շրջաններում կես տարի ցերեկ է, կես տարի գիշեր։

### Ինչու՞ են լինում ամառն ու ձմեռը

Դուք դեռ չե՞ք մտածել, թե ինչու ամռանը տաք է լինում, ձմռանը՝ ցուրտ։ Հարցը հասարակ է թվում, բայց պատասխանելն այնքան էլ հեշտ չէ։

Արևը մեր երկնային վառարանն է։ Այդ պատճառով բնական է ենթադրել, որ երբ արևը մոտ է երկրին, վերջինիս վրա տաք է, իսկ երբ հեռու է՝ ցուրտ։ Այնինչ իրականում ձմռանը մենք 5 միլիոն կիլոմետրով Արևին ավելի մոտ ենք, քան ամռանը։

Բայց քանի որ երկրից մինչև Արև հեռավորությունը 150 միլիոն կիլոմետր է, ապա այդ հինգ միլիոնը մեծ դեր չի խաղում, դա նույնն է, ինչ որ վառարանից մեկուկես մետրի վրա գտնվող մարդը նրանից հեռանա 5 սանտիմետրով։ Այդ չնչին մոտեցումը ոչինչ չի նշանակում, և բացի դրանից, մենք Արևին մոտ ենք ձմռանը և ոչ ամռանը։ Իսկ սառնամանիքները հենց այդ ժամանակ են սկսվում։

Ուրեմն ձմեռային ցրտերի պատճառը Արևից հեռանալու մեջ չպետք է փնտրել։

Պատճառներից մեկն այն է, որ օրը ձմռանը շատ կարճ է։ Գիշերը երկու անգամ ավելի երկար է, քան ցերեկը։ Այդ երկար գիշերվա ընթացքում երկիրը սառչում է։

Մյուս պատճառն այն է, որ ձմռանը Արևը երկնքում շատ չի բարձրանում։ Ամռան ամենաշոգ պահը այն ժամանակ է լինում, երբ Արևը շատ է բարձրանում, որի շնորհիվ երկրի վրա ավելի մեծ քանակությամբ են Արեգակի ճառագայթներ ընկնում։ Այդ պատճառով էլ առավոտյան և երեկոյան ավելի զով է։ Արևի բարձրության մասին, հետևաբար և այն մասին, թե նա ինչքան է տաքացնում, կարելի է դատել առարկաների ստվերների միջոցով։ Ինչքան բարձր է Արևը, այնքան շոգ է, և այնքան կարճ են ստվերները։ Ձմռանը ստվերները երկար են լինում։

### Արևի ճառագայթները և բնության կյանքը

Բույսերն ու կենդանիները հարմարվում են արևի շարժմանը։ Երբ արևը մայր է մտնում, ծաղիկները փակում են իրենց թերթիկները, կենդանիները պառկում են քնելու։

Հանգստանում է ամբողջ բնությունը։

Ձմռանը գետերը սառչում են, ձյունը ծածկում է դաշտերն ու անտառները։ Ծառերը տերևաթափ են լինում, կանաչ խոտը չորանում է, կենդանիներն ավելի քիչ են կեր ճարում։ Չվող թռչունները ճանապարհ են ընկնում դեպի տաք երկրները։

Շատ կենդանիներ ձմռանը քուն են մտնում կամ ապրում են՝ սնվելով իրենց ձմեռային որջերում հոգատարությամբ թաքցրած պահուստներով։

Ձմռանը չեն լինում և թիթեռները։ Գույնզգույն թիթեռների կյանքը սկսվում է գարնանը և վերջանում աշնան մոտ։

Բույսերի և կենդանիների կյանքը ղեկավարում է արևը։

### Ո՞վ է սարքում եղանակը

Դուք երևի շատ եք լսել եղանակի տեսությունը։ Օդերևութաբանական ինստիտուտի հաղորդումները, թե ինչպիսին կլինի եղանակը վաղը։

Օդերևութաբանները գուշա-



կում են եղանակը, բայց նրանք չեն, որ եղանակը ստեղծում են։ Նրանք միայն գրի են առնում ջերմաչափերի, բարոմետրերի տվյալները և երկրի տարբեր ծայրերից ու արտասահմանից հաղորդում են իրենց կենտրոնին։ Այդ հաղորդումների հիման վրա կարելի է հաշվել, թե ինչպիսի եղանակ կարելի է ըսպասել վաղը։

Ցերեկվա և գիշերվա հաջորդումը, տարվա եղանակների հաջորդումը կախված են արևից։ Եղանակն էլ արևն է ստեղծում։



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 11 Նոյեմբեր 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. ԷԴՎԱՐԴ ԱՐԵՎՇԱՏՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԳԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96։*

ՎՖ 06700։ Պատվեր՝ 1443։ Տպաքանակ՝ 50800։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 25/XI. 1968 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։ Գինը՝ 10 կ.




Պետերբուրգի իրավագիտության ուսումնարանի սաները խմբվել էին երաժշտության սենյակի դռան մոտ և հափշտակությամբ լսում էին ներսից եկող նվագի ձայնը։ Նրանք արդեն գիտեին, թե ով է նվագում. դա առաջին անգամը չէր, որ Պետյան հարմար պահերին առանձնանում և տարվում էր երաժշտությամբ։ Սակայն այս անգամ նա մոռանալով իր վեհերոտությունն ու կաշկանդվածությունը, նվագում էր ինքնամոռաց, նվագում էր նուրբ ու մելամաղձոտ մեղեդիներ։ Նա ինքն էլ տխուր էր, հիշել էր իր ծննդավայրը՝ Վոտկինսկը, իրենց հարազատ տունն ու սիրելի մայրիկին, որ իր մեղմիկ ձայնով հաճախ էր երգել ու նվագել իր համար։

Տղաների զսպված աղմուկը սթափեցրեց Պետյային, բայց ընկերները շրջապատեցին նրան և խնդրեցին նվագել իրենց համար։ Պետյան սիրով կատարեց ընկերների ցանկությունը՝ զարմանք ու հիացմունք պատճառելով նրանց։

— Ի՛նչ հրաշալի է, տղանե՛ր, սա գյո՛ւտ է, Չայի՛նկա, դու այստեղ էլ քննությունդ գերազանց բռնեցիր,— ոգևորված բացականչեց տղաներից մեկը, որը Պետյայի Չայկովսկի ազգանունից ելնելով Չայինկա կոչեց նրան։ Եվ որովհետև Պետյան շատ էր սիրված, ուստի բոլորը, նույնիսկ ուսուցիչները սկսեցին անվանել նրան Չայինկա։

Տասը տարեկան էր Պետյան, երբ մայրը նրան Ալապաևսկից բերեց Պետերբուրգ, ուսման տալու նպատակով։ Պետյայի ծնողները գիտեին իրենց որդու երաժշտական հակումները։ Նրանք դա նկատել էին դեռ այն ժամանակ, երբ Վոտկինսկում, իրենց տանը անցկացրած երաժշտական երեկոներին, Պետյան, որ դեռ 4—5 տարեկան էր, կարող էր առանց հոգնելու երաժշտություն լսել։ Քիչ չէր պատահել, որ մայրը տեսել էր երեխային երաժշտությունից ազդված արտասվելիս։ Իսկ մի անգամ, երաժշտական երեկոյից հետո, Պետյան սկսեց այնպես լաց լինել, որ հնարավոր չէր հանգստացնել։

— Ինչո՞ւ ես լալիս, Պետենկա, ի՞նչ է պատահել, որտե՞ղ է ցավում,— հարցնում էր նրան դայակը։

— Օ՜, այդ երաժշտությունը, ազատե՛ք ինձ նրանից, մտել է հոգուս ու գլխիս մեջ,— լաց լինելով պատասխանել էր տղան, իսկ հաջորդ օրը հիվանդացել։

Այդ բոլորը գիտենալով հանդերձ, իրագործել որդու ցանկությունը գրեթե անհնար էր, նախ՝ որ այդ ժամանակ երաժշտական ուսումնարաններ չկային, դասեր կարելի էր առնել միայն վարձու ուսուցիչների մոտ և, բացի դրանից, այդ տարիներին Ռուսաստանում պրոֆեսիոնալ երաժիշտների վիճակը չափազանց ծանր

*Նկ. ԱՆԱՏՈԼԻ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# Չ Ա Յ Կ Ո Վ Ս Կ Ի

էր: Ուստի և Պետյային տվեցին իրավագիտական ուսումնարան-պանսիոնատ... Այդ բիրտ ու չինովնիկական դպրոցում շատ էր դժվար Պետյայի համար, չոր ու ցամաք գիտելիքները չէին կարող հագուրդ տալ նրա նրբակերտ հոգուն, բայց կար, իհարկե, մի լավ բան, որ միակ մխիթարությունն էր. դա երաժշտության դասերն էին, որ տրվում էին միայն ցանկացողների համար: Եվ Պետյան ոչ միայն իր երաժշտական գիտելիքների հիմքը դրեց այդ ուսումնարանում, այլև սովորելու տարիներին գրեց բավականաչափ երաժշտական ինքնուրույն ստեղծագործություններ, որոնք շատ հաճախ նվագում էր իր ընկերների համար:

Հենց այդ տարիներին էլ, հոր օգնությամբ, Պետյան սկսում է իր երաժշտական գիտելիքները խորացնել այն ժամանակի ճանաչված ուսուցիչ Կյունինգերի մոտ: Իր ուսուցչի հետ նա լսում էր սիմֆոնիկ համերգներ ծանոթանում ռուսական և արևմտաեվրոպական արվեստի գործերին:

1859 թվականին, 19-ամյա պատանին ավարտելով իրավագիտության ուսումնարանը, սկսեց աշխատել արդարադատության դեպարտամենտում:

Աշխատում էր և, եթե ցանկանար, այդ միջավայրի ազնվատոհմ ընկերների ուշադրության կենտրոնը կըդառնար, բայց նա չէր ձգտում դրան, դա չէր նրա կոչումը, դա չէր նրա տենչանքը...

«Ինձանից չինովնիկ սարքեցին, այն էլ՝ վատ: Ես աշխատում եմ հնարավորին չափ ուղղվել, զբաղվել մի լուրջ գործով... Եվ միաժամանակ ուսումնասիրել գենեբալ-բաս... (այսինքն՝ երաժշտագիտություն)», գրում էր Չայկովսկին իր ավագ քրոջը:

1862 թվականին Անտոն Ռուբինշտեյնի ջանքերով Պետերբուրգում բացվում է Ռուսաստանի առաջին կոնսերվատորիան: Չայկովսկին դառնում է կոնսերվատորիայի ամենասիրված ուսանողը: Այս անգամ արդեն նա գրում է քրոջը. «Այժմ ես վճռականապես համոզվեցի, որ վաղ թե ուշ ծառայությունս կփոխարինեմ երաժըշտությամբ»: Եվ իսկապես, թողնում է ծառայությունը, ամբողջապես նվիրվելով իր սիրած զբաղմունքին:

Չայկովսկին երաժշտության լիարժեք պարապմունքներն սկսել էր շատ ուշ և այժմ, կոնսերվատորիայում, նա ամեն կերպ աշխատում էր լրացնել բաց թողածը: Ուսուցիչների կողմից մի քանի օրվա համար տրված հանձնարարությունները հաջորդ օրն իսկ պատրաստում էր: Միաժամանակ նա անհագորեն ըստեղծագործում էր, գրելով ուվերտյուրներ, կվարտետներ, անսամբլներ, ռոմանսներ:

Կոնսերվատորիայում գրած նրա առաջին նշանավոր ստեղծագործություններից էր Օստրովսկու թեմաներով գրված ուվերտյուրան (Նախերգանք) օրկեստրի համար:

1865 թվականին Չայկովսկին փայլուն կերպով ավարտում է Պետերբուրգի կոնսերվատորիան՝ ստանալով արծաթե մեդալ: Ավարտական երեկոյի ժամանակ,



առաջին անգամ, կոնսերվատորիայի նվագախումբը Անտոն Ռուբինշտեյնի ղեկավարությամբ կատարում է Չայկովսկու «Կանտատան» գրված երգչախմբի և նվագախմբի համար:

Կոնսերվատորիան ավարտելով՝ Պյոտր Իլյիչ Չայկովսկին հրավիրվում է Մոսկվայի նորաստեղծ կոնսերվատորիան մանկավարժական աշխատանքի:

Իր մանկավարժական աշխատանքին զուգընթաց Չայկովսկին աշխարհին տալիս է այնպիսի ստեղծագործություններ, որոնք դառնում են համամարդկային, հեղինակին բերելով համաշխարհային համբավ:

Դժվար է նշել որևէ օպերային թատրոն, որն իր խաղացանկում չունենա Չայկովսկու ստեղծագործությունները:

Չայկովսկու երաժշտությունը շատ պարզ է ու ժողովրդական: Նա շատ մոտ է մարդու հոգուն ու հասկանալի: Երբ լսում ես Չայկովսկու երաժշտությունը, թվում է, թե տեսնում ես ռուսական ընդարձակ տարածությունները, նրա ջինջ երկինքը, լայն ու ջրառատ գետերը, անծայրածիր դաշտերն ու անտառները: Հազիվ թե գտնվի մեկը, լինի մեծ թե փոքր, որ լսած չլինի Չայկովսկու «Կարապի լիճը» բալետը, «Եվգենի Օնեգին», «Պիկովայա դամա», «Իոլանտա» օպերաները, նրա բազմաթիվ սիմֆոնիաներն ու կամերային ստեղծագործությունները:

1893 թվականի աշնանը Չայկովսկին ավարտում է իր վերջին սիմֆոնիան, որը անվանում են «Պաթետիկ»: «Իմ կարծիքով,— ասում է հեղինակը,— դա մինչև հիմա իմ ստեղծագործություններից ամենալավն է»: Հենց այդ նույն օրերին, վարակվելով խոլերա հիվանդությամբ, նոյեմբերի 5-ին, ընդամենը 53 տարեկան հասակում, մեծ կոմպոզիտորի սիրտը դադարեց բաբախելուց:

ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ



## ՁՄԵՌ Է, ՑՈՒՐՏ Է...

*ԷՄԻԼ ՄԿՐՏՉՅԱՆ*

Ձմեռ է. ցուրտ է էլի.
Դաշտի վրա
Մուժը ճերմակ քող է կապել.
Թվում է, թե հեքիաթների
Հսկաները
Տակառներով կաթ են թափել:
Անտառը լուռ քուն է մտել.
Նապաստակը
Ականջը խենթ քամու ծափին.
Քչփչում է. Օրը մթնել.
Սակայն տեսեք
Չի երևում Ձմեռ պապին:—
Արջն անդադար զանգ է տալիս
Սկյուռին, որ
Ապրում է իր տան վերևում.
—Սպասելով ընկա՞նք հալից,
Ձեր բարձունքից
Ձմեռ պապին չի՞ երևում:
Փայտփորիկը, որ կամավոր
Հեռագրիչ է.
Հույս է տալիս մեր բվեճին.
Կասեմ որպես հին կապավոր.
Ձմեռ պապը
Հե՛նց նոր անցավ գյուղը վերջին՝
Մշուշի քողն հաղթ ուսերին:
Սարերն էլ մեր.
Թիկն տված ձյան բարձին.
Բոլորի հետ կարոտագին
Սպասում են
Ձմեռ պապի վերադարձին:

*Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*